# ՄՕՏԱՒՈՐ ԱՐԵՒԵԼՔԻ ՏԱԳՆԱՊԸ

## ԶՕՐ. ՏԸ ԿՕԼԻ ԴԱՌՆ ԽՕՍՔԵՐԸ Ի ՊԱՏԱՍԽԱՆ ԱՆԳԼ. ԾԱՆՈՒՑԱԳՐԻՆ

Զօր. տը Կօլ շաբաթ օր պատերազմական նախարարութեան մէջ ընդունելով մօտ 200 ֆրանսացի եւ օտար թղթակիցներ, շատ կարեւոր յայտարարութիւններ ըրաւ Սուրիոյ դէպքերու եւ առ հասարակ Մօտաւոր Արեւելքի հարցին առթիւ:

Առժամեայ կառավարութեան նախագահը մասնաւորապէս շեշտեց հետեւեալ կէտերը.—

1. Մօտաւոր Արեւելքի խնդիրը միջազգային է եւ չի կրնար կարգադրուիլ սահմանափակ ժողովի մը մէջ, ինչպէս առաջարկած էր բրիտանական կառավարութիւնը.— 2. Միայն գլխաւոր պետութեանց — մէջն ըլլալով Խ. Միութիւնը — եւ արաբական պետութեանց մասնակցութեամբ կազմուած խորհրդաժողով մը կրնայ կարգադրել Միջին Արեւելքի եւ շահակից պետութեանց ապագայ յարաբերութիւնները.— 3. Ծագած վէճերը պէտք է քննուին միջազգային գործակցութեան նոր տեսակէտով եւ ոչ թէ միջազգային մրցակցութեան հին տեսակէտով:

Զօրավարը նախ բացատրեց թէ ինք Սուրիոյ մէջ կրակը դադրեցնելու հրաման տուած էր Պ. Չըրչիլի ծանուցագիրն ստանալէ առաջ, եւ հարկ չէր դատած պատասխանել անոր: Կառավարութեան ներկայացուցիչներէն մէկը լրացուց այս յայտարարութիւնը, որով երեւան եկաւ թէ Մայիս 30ին Չըրչիլ իր մօտ հրաւիրած է Լոնտոնի ֆրանսական դեսպանը եւ խնդրած է որ Ֆրանսացիները դադրեցնեն կրակը եւ ենթարկուին Սուրիոյ բրիտանական հրամանատարին հրամանին: Դեսպանը այս առաջարկը հաղորդած է Փարիզ: Զօր. տը Կօլ ըսաւ թէ այս դիմումին վրայ ֆրանսական զօրքին հրամայուեցաւ դադրեցնել կրակը, բայց մնալ իրենց դիրքերուն մէջ: Հակառակ այս հրամանին, յաջորդ օրը Պ. Չըրչիլ կը ղրկէր իր խիստ ծանուցագիրը, որ կը վերջանար այսպէս.— «Երբ կրակը դադրի եւ բարեկարգութիւնը վերահաստատուի, մենք պատրաստ ենք եռանդամ բանակցութիւններ սկսելու հոս, Լոնտոնի մէջ»: Զօրավարը շարունակեց, ակներեւ դառնութեամբ.

### ԻՆՉՈ՞Ւ ԿԸ ԴԺՈՒԱՐԱՆԱՅ ԼՈՒԾՈՒՄԸ

— «Մայիս 31ին ժամը 4.30ին ես Պ. Չըրչիլէն ստացայ ծանուցագիր մը զոր կարդացած էք եւ որ արդէն կարդացուած էր Պ. Իտընի կողմէ երեսփ. ժողովին մէջ: Այդ գիրը ոչինչ փոխեց եւ պիտի չփոխէ: Ես անհրաժեշտ չգտայ պատասխանել այդ գրին: Չէր արժեր պատասխանել, քանի որ հանրութեան սեփականութիւնը դարձած էր եւ կը կարծեմ թէ հասարակաց շահն ալ կը պահանջէ որ չպատասխանեմ»:

Յետոյ պատմական ակնարկ մը նետեց Սուրիոյ դէպքերուն վրայ: «Սուրիան հին խնդիր մըն է: Ան հինաւուրց ամբողջութիւն մըն է նոյնքան յարգելի, նոյնքան հին որքան աշխարհը, եւ որու մասին կը լսենք պատմութեան սկիզբէն ի վեր: Սուրիոյ եւ Արեւելքի մէջ կը գտնուինք դէմ դիմաց ընդհանրապէս արաբ ազգաբնակչութեանց, որոնք հակառակ իրենց վեհոգի յատկանիշներուն, միշտ կազմած են մասնաւորապէս փափուկ խնդիր մը: Այս Արեւելքին մէջ, Ֆրանսան դարերով, իր մտաւոր. հոգեկան եւ բարոյական ազդեցութեանց միջոցաւ, նաեւ արաբական աշխարհին հետ իր ունեցած մասնաւոր խնամութեամբ, ականաւոր դեր մը կատարած է: Անգլիան ալ, իր կողմէ, ընդհանրապէս ուրիշ պատճառներով, մասնաւորապէս առեւտրական եւ նաւային, նմանապէս կարեւոր դեր մը կատարած է: Վերջին պատերազմէն ետք, Անգլիոյ յանձնուեցան Իրաքի, Պաղեստինի եւ Անդրյորդանանի հոգատարութիւնները, իսկ Ֆրանսայի՝ Սուրիոյ եւ Լիբանանի հոգատարութիւնը: Հազիւ Ֆրանսա եւ Անգլիա միեւնոյն կացութեան մէջ մտած, դժուարութիւնները սկսան եւ ահա կը տեսնէք թէ վերջանալէ հեռու են: Ֆրանսայի քաղաքականութիւնն է անկախութեան եւ տնտեսական ամենամեծ զարգացման առաջնորդել Սուրիան եւ Լիբանանը: Երկու պատճառներ կը դժուարացնեն այս գործը,— առաջին՝ Սուրիան խառնուրդ մըն է զանազան կրօններու, երկրամասերու եւ ազգութեանց, երկրորդ՝ Անգլիոյ բռնած դիրքը»:

### 600.000 ԱՆԳԼ. ԶԻՆՈՒՈՐ 4—5000Ի ԴԷՄ

Զօրավարը դիտել տուաւ թէ բազմաթիւ անգլիացի գործակալներ կը գործեն Միջին Արեւելքի մէջ, խլրտումներ սարքելով Ֆրանսայի շահերուն դէմ: Խօսելով միայն վերջին դէպքերուն վրայ, ըսաւ թէ 1941ին ինք եւ հարիւրապետ Օլիվըր Լիթըլթըն համաձայնութիւն մը կնքեցին, որուն տրամադրութեամբ Ֆրանսան պիտի շարունակէր Սուրիան եւ Լիբանանը վարել այն իրաւասութիւններով զոր միշտ ունեցած է: Յետոյ, երկու կողմերը համաձայնեցան թէ ամբողջ Արեւելքը պէտք է կազմէ մէկ ճակատ ռազմագիտական գործողութեանց համար ընդդէմ Գերմաններուն եւ Իտալացիներուն եւ հրամանատարութիւնը յանձնուի Անգլիացիներուն: Նոյն համաձայնութեամբ, Սուրիոյ եւ Լիբանանի բարեկարգութեան պահպանումը կը պատկանէր միայն Ֆրանսայի: Երբ Ֆրանսա հարկադրուեցաւ Սուրիայէն քաշել գրեթէ ամբողջ ֆրանսական զօրքը, Թունուզ եւ Ֆրանսա ղրկելու համար, առ առաւելն 4—5000 հոգինոց աննշան թիւ մը ձգելով, Անգլիացիները մեծամեծ ուժեր պահեցին,— մինչեւ 600.000 զինուոր: Ֆրանսա կ'ուզէր վերջ տալ ծանրացած կացութեան եւ փորձեց բանակցիլ Սուրիոյ եւ Լիբանանի կառավարութեանց հետ: Մայիս 8ին երկու կառավարութիւնները ըսին մեր ընդհ. ներկայացուցիչին թէ աւելորդ է բանակցիլ ֆրանսական առաջարկներուն վրայ եւ դէպքեր պատահեցան ամէն կողմ, տարածուելով Սուրիոյ գիւղերուն եւ Դամասկոսի մէջ: «Այս դէպքերը կատարուեցան զինեալ հրոսախումբերու կողմէ, որոնց դժբախտաբար յաճախ կ'օգնէին ոստիկանութիւնը եւ ոստիկան զօրքը: Անոնք կը գործածէին զէնքեր որ հայթայթուած էին բրիտանական իշխանութեանց կողմէ, եւ հակառակ եղած ազդարարութեանց, յարձակումներ կատարուեցան ֆրանսական կառավարութեան ներկայացուցիչներուն վրայ: Ֆրանսական զօրքը պաշարուած էր զօրանոցներուն մէջ եւ անհրաժեշտ էր պատասխանել: Այդպէս ալ եղաւ, առանց աւելորդ բռնութեան: Բարեկարգութիւնը արագօրէն վերահաստատուեցաւ: Դէպքերը ծաւալեցան Դամասկոսի մէջ, ուր հարկ եղաւ թնդանօթ գործածել»: (Զօրավարը այստեղ շեշտեց թէ միայն մէկ օդանաւ գործածուած է, եւ ոչ աւելի):

Տեղի անձկութեան պատճառով վաղուան կը ձգենք այս կարեւոր յայտարարութեանց միւս կէտերը:

# Մոսկուայի միջամտութիւնը

Խ. Միութեան արտաքին գործավարութիւնը Յունիս 2ին զեկոյց մը հրատարակեց, որ կ'ըսէ թէ խորհրդային կառավարութիւնը մասնաւոր կոչ մը ուղղած է Մեծն Բրիտանիոյ, Մ. Նահանգներու եւ Չինաստանի կառավարութեանց, Ֆրանսայի եւ Սուրիա-Լիբանանի միջեւ ծագած վէճին առթիւ: «Խորհրդային կառավարութիւնը մտահոգութեան մատնուած է այն թշնամութիւններէն որ ծագած են Սուրիա-Լիբանանի հողին վրայ: Կացութիւնը ծանրացած է մանաւանդ անոր համար որ երեք պետութիւնները, Ֆրանսա, Սուրիա եւ Լիբանան անդամ են Միացեալ Ազգերուն եւ կը մասնակցին Սան Ֆրանչիսկոյի խորհրդաժողովին»: Յիշելէ վերջ պատահած դէպքերը, խորհրդային կառավարութիւնը անհրաժեշտ կը գտնէ որ ստիպողական միջոցներ ձեռք առնուին, թշնամութեանց վերջ տալու եւ վէճը խաղաղութեամբ կարգադրելու համար: Այս առթիւ առաջարկներ կը ներկայացնէ Ֆրանսայի, Անգլիոյ, Մ. Նահանգներու եւ Չինաստանի կառավարութեանց, որոնց կը վերաբերի խաղաղութեան կազմակերպութեան եւ միջազգային ապահովութեան հաստատման նախաձեռնութիւնը: Ամերիկեան թերթերը կը գրեն թէ Խ. Միութիւնը Ֆրանսայի կողմը կը բռնէ այս հարցին մէջ:

*** Վերջին լուրերու համաձայն, կատաղի բազմութիւն մը Յունիս 2ին յարձակելով Դամասկոսի ֆրանսական մէկ պահականոցին վրայ, սպաննած է ֆրանսացի յիսնապետ մը եւ երկու Սենեկալցի զինուորներ: Անգլ. զօրքը ապահովութեան տակ առած է ֆրանսական զինուորները եւ քաղաքացիները, հրասայլերով եւ թնդանօթներով:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍԱՆ ՖՐԱՆՁԻՍԿՈՅԷՆ կը հեռագրեն թէ նոր տագնապ մը ծագած է: Խորհրդային պատուիրակութիւնը մերժած է որ եւ է իրաւախոհութիւն վեթոյի իրաւունքի մասին, եւ կը վախցուի որ ձգէ հեռանայ, եթէ ելք մը չգտնուի:

50—75.000 ԳԵՐԻՆԵՐ եւ աքսորականներ նոր ցոյց մը կատարեցին շաբաթ օր, զինուորական կարգով, Սէնի ձախ ափէն երկննալով մինչեւ Շան զ'Էլիզէ: Յաղթական Կամարին տակէն անցած ատեն խոշոր ծաղկեպսակ մը դրին Անծանօթ Զինուորի դամբարանին վրայ: Յետոյ գացին գերիներու նախարարութեան պաշտօնատունը: Բազմաթիւ դրօշներու եւ նշանատախտակներու վրայ արձանագրուած էին հետեւեալ պահանջները.— Հագուստ կ'ուզենք, կօշիկ, երեք ամիս վճարովի արձակուրդ եւ աշխատանք, վճարումի յաւելում եւն.: «Գործ եւ ոչ թէ խօսք»: Կը պահանջէին նաեւ որ նախարարը հրաժարի:

ԼԱՎԱԼ Ֆրանսա կը սպասուի այսօր-վաղը եւ շիտակ Ֆրէնի բանտը պիտի առաջնորդուի: Կը հերքուի անձնասպանութեան լուրը:

ՀԻԹԼԷՐԻ մէկ գաղտնի հրահանգը գտնուած է, որուն համաձայն դեռ 1940 Նոյեմբերին որոշած էր յարձակիլ Ռուսիոյ վրայ — արշաւանք մը որ տեղի ունեցաւ 1941 Յունիս 22ին:

51 ՆԱՑԻՆԵՐ ՊԻՏԻ ԳՆԴԱԿԱՀԱՐՈՒԻՆ, ամէն անգամ որ մահափորձ մը կատարուի խորհրդային զինուորի մը կամ պաշտօնատարի մը դէմ: Վերջերս կարգ մը դէպքեր պատահած ըլլալով Պերլինի մէջ, այս ազդարարութիւնն ուղղուեցաւ քաղաքապետին միջոցաւ:

# «Հայ Երգի Օր»ը

Այս տարի եւս Փարիզի Հայկական Երգչախումբը 10 Յունիս Կիրակի կէս օրէ վերջ Սալ Կավոյի մէջ կը տօնէ «Հայ երգի օրը», որ հաստատուած էր 1935ին:

Չկայ որ եւ է արտայայտութիւն որ կարենայ այնքան հարազատ կերպով ցոլացնել մեր ժողովուրդին սէրն ու կարօտը, լացն ու սուգը, խինդն ու ծիծաղը, եւ վերջապէս հզօր մարտնչումն ու ահեղ պայքարը, որքան հայ երգը, իր զանազան երանգներով:

Այդ օրը, Հայաստանի եւ արտասահմանի 25է աւելի հին ու նոր երաժշտագէտներու լաւագոյն գործերը հանդէս պիտի գան, խմբերգով, մեներգով, դաշնակով եւ ջութակով:

Անգաղտնապահութիւն ըրած չենք ըլլար, երբ այժմէն յայտնենք թէ, շնորհիւ Պ. Արայ Պարթեւեանի բարձր տաղանդին եւ անխոնջ կորովին, այս տարի ալ, որպէս առաջին ունկնդրութիւն, մեծագոյն հաճոյքը պիտի ունենանք լսելու Չարենցի «Ես իմ անոյշ Հայաստանի» քառաձայն խմբերգը:

Հայաստանի մէջ թէ արտասահման՝ միշտ պատնէշին վրայ, ի խնդիր հայ ժողովուրդի մշակութային եւ գեղարուեստական արժէքներու յարատեւ ճոխացման եւ զարգացման: Ահա «Հայ-Երգի Օրուան» պատգամը:

Ս. Յովհաննէսեան

ՄԻՍՈՎ ԿԵՐԱԿՈՒՐ պիտի տրուի ճաշարաններու, պանդոկներու, սրճարաններու, ակումբներու եւ առ հասարակ բոլոր նման հաստատութեանց մէջ, բացի գործարաններու յատուկ ճաշարաններէն, միայն կիրակի եւ տօն օրերը, այն ալ ցերեկին:

### ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

## ԱՆՑՆՈՂ ՀԻՆԳ ՏԱՐԻՆԵՐԸ

(Բ. եւ վերջին մաս)

Մասիս Մ. Միութիւնը սա հինգ տարուան փոթորիկներու ընթացքին, իր տասնեակ պատանի եւ երիտասարդ մարզիկներով, նախանձելի յաջողութիւններ շահեցաւ աւելի բարձր խումբերու դէմ: Տեղական թերթերը շատ անգամներ գրած են այս մասին:

1944 Յուլիսին, «Միլիս»ները բազմաթիւ ձերբակալութիւններ կատարեցին փողոցէ փողոց, տունէ-տուն: Բժիշկներ եւ շատ մը անմեղ զոհեր, որոնց մէջ քանի մը հայ երիտասարդներ ալ:

Ամիսներ առանց լուրի մնալէ վերջ, օր մըն ալ, երբ արդէն Դիմադրական Ճակատը կը ծաւալէր, մեր այս երեք երիտասարդները մեծ քաջագործութիւններ կը կատարեն: Աղտոտ ու կոտրած շոգեկառքին մէջ, իբրեւ կենդանիներ, երբ բռնի Գերմանիա կը քշուին, անոնք վար կը ցատկեն, իրենց հետ փախցնելով կարգ մը ֆրանսացի երիտասարդներ, ու կ'ազատուին: Եւ այսօր նոյն Ֆրանսացիները հպարտութեամբ կը խօսին իրենց հայ ընկերներուն մասին:

Աղքատախնամը.— Լիոնի Ազգ. Միութեան ջանքերով, 1943 Սեպտեմբերին մեր քաղաքին մէջ ալ կազմուեցաւ Աղքատախնամ միութիւն մը, որ մօտ մէկ տարուան ընթացքին հոգաց տասնեակ մը կարօտ ընտանիքներուն պէտքերը: Այսօր ալ, նոյն իրերօգնութեան գործը կը շարունակուի, համերաշխութեամբ:

Հայ Ա. Ճակատը հոս ալ իր մասնաճիւղն ունի: Կ'ըսեն թէ՝ նոր ընտրութիւն պիտի ըլլայ: Մաղթենք որ համերաշխ գետնի վրայ կատարուի, ինչպէս ամէն տեղ, յանուն գաղութին բարօրութեան:

Սաfo

ՀԱՅ ԿԱՄԱՒՈՐՆԵՐՈՒ ԵՒ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ Վիէնի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր այն հայրենակիցները որոնք 1939—1945 ծառայած են ֆրանսական բանակին մէջ, իբրեւ պարտադիր զինուոր կամ կամաւոր: Նմանապէս կը հրաւիրուին 1914—1918ի մեր ռազմիկ կամաւոր ընկերները, անխտիր եւ ստիպողաբար: Ժողովը՝ Սէրքըլ-Կաթոլիկ սրահին մէջ, 9 Յունիս, շաբաթ օրը երեկոյեան ժամը 8ին:

ՓԱՐԻԶԱՀԱՅ Հ. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ կազմակերպած երեկոյթը յետաձգուած է: Մանրամասնութիւնները պիտի հաղորդուին առաջիկային:



Le Gérant : H. AGONEYAN

Imprimerie DER-AGOPIAN, 17, Rue Damesme . 13e

